# ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆՑԻ ԲԱՆՏԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ

(ՄԱՀՈՒԱՆ 120ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹԻՒ)

(Գ. եւ վերջին մաս)

1858ին է որ կը սկսի Նալբանդեանցի գրական գործունէութիւնը: Այդ Թուականին է որ Ստեփաննոս Նազարեանց Մոսկուայի մէջ կը հիմնէ իր «Հիւսիսափայլ» ամսագիրը՝ որ այնքան բեղուն արդիւնք մը պիտի ունենար եւ լայն ազդեցութիւն վաթսունական Թուականներու մտաւորականութեան վրայ:

Նալբանդեանց կանոնաւոր կերպով կ'աշխատակցի «Հիւսիսափայլ»ի իր բանավէճերով, իր ժամանակագրութիւններով, իր ուսումնասիրական յօդուածներով եւ թարգմանութիւններով: Փնտռուած ստորագրութիւններ էին Կոմս Էմմանուէլ, Սիմոն Մանիկեանց, Ուստաեանց՝ որոնք Նալբանդեանցի կեղծանուններն էին, մանաւանդ որ առ հասարակ կը շօշափէր ժողովուրդը շահագրգռող հարցեր եւ իր լեզուն աւելի մատչելի էր լայն զանգուածներուն: Ինքն է որ կ'ըսէ — «Գործ ունենալ կենդանի ժողովրդի հետ, կենդանի բարբառի միջոցով կենդանի գաղափարներ տարածելու համար»: Յիշատակենք որ Նալբանդեանցները նախապէս Ուստաեանց կը կոչուէին Միքայէլի մեծ հօր «ուստա» մակդիրը տրուելուն պատճառաւ:

« Հիւսիսափայլ »ի իր աշխատակցութիւնը սակայն իր համբաւն ու ազդեցութիւնը տարածելով հանդերձ, պատճառ եղաւ որ իր հակառակորդներուն Թիւը աճի, որովհետեւ բնաւորութեամբ բուռն ու անզուսպ, իր բանավէճերուն մէջ չէր վարաներ նաեւ անձնական յարձակումներ գործել, տեղի անտեղի հրապարակելով նաեւ հակառակորդներուն անձնական կամ ընտանեկան խնդիրները: Նշանաւոր «կռուազան» մը եղած է, ինչ որ սակայն ի վերջոյ այնքան» սուղի պիտի նստէր իրեն:

1859ին Նալբանդեանց մասամբ իր խանգարուած առողջութիւնը դարմանելու եւ նաեւ զարգացումն առաջ տանելու համար ճամբորդութիւն մը կը կատարէ արտասահման: Նախ կ'անցնի Պոլիս, ապա Վիէննա ու Փարիզ: Այս առթիւ կը ծանօթանայ եւրոպացի յայտնի գործիչներու հետ եւ նաեւ կ'ուսումնասիրէ իր այցելած վայրերուն Հայոց կացութիւնը եւ այդ ուղղութեամբ տեղեկագրութիւններ կը ղրկէ «Հիւսիսափայլ»ի:

1860ին կը վերադառնայ Ռուսաստան եւ քանի մը ամսուան պատրաստութեամբ Փեթերսպուրկի համալսարանին մէջ յաջող քննութիւններ տալով կը ստանայ արեւելեան լեզուներու պսակաւորի վկայագիր:

Այնուհետեւ Նալբանդեանց այլեւս համարձակ կը վերադառնայ Նոր-Նախիջեւան, որովհետեւ Ներսէս կաթողիկոս վախճանած էր առանց կարենալ զինքը ձեռք ձգելու եւ նոր կաթողիկոս ընտրուած էր Մատթէոս եպիսկ.:

Այս վերադարձը մասնաւոր նպատակ մը ունէր: Հնդկաստան գաղթած Հայերէն ոմանք, զանազան կտակներ թողած էին, մասնաւորապէս ԺԸ. դարու վերջերը, ի նպաստ իրենց ծննդավայրերուն եւ ասոնց կարգին նաեւ Նոր Նախիջեւանի: Սակայն այդ կտակները անտեսուած կը մնային ժողովուրդին անտարբերութեան եւ ազգային իշխանութեանց ապիկարութեան հետեւանքով:

Նալբանդեանցի նպատակն էր վերարծարծել Նախիջեւանի ի նպաստ եղած կտակներուն խնդիրը եւ գլուխ հանել անոնց գործադրութիւնը: Նախ « Հիւսիսափայլ »ի մէջ յօդուածով մը լայնօրէն կը պարզէ այս հարցը եւ ապա իր հայրենակիցները կր մղէ այդ ուղղութեամբ գործնական միջոցներ ձեռք առնելու:

Նախիջեւանցիները ընդառաջ երթալով Նալբանդեանցի մտադրութեան, զինքն իսկ լիազօր կը կարգեն որպէսզի երթայ Հնդկաստան, տեղւոյն վրայ հետապնդելու համար կտակները: Այս ընտրութեան դէմ կր պայքարին իր բազմաթիւ հակառակորդները, առարկելով անոր ապօրինի հանգամանքը:

Բայց Նալբանդեանց, որ ատենօք այնքան հեռու կը փախչէր, կ'երթայ Էջմիածին եւ Մատթէոս կաթողիկոսէն վաւերացնելով իր լիազօրութիւնը, ճամբայ կ'ելլէ դէպի Հնդկաստան:

Նախ Պոլիս, ապա Փարիզ ու Լոնտոն եւ ամիսներ վերջ կը հասնի ուրեմն Կալկաթա: Հոն բաւական լուրջ դժուարութիւններու եւ արգելքներու կը հանդիպի, բայց կորովի ու յամառ մարդ՝ ի վերջոյ կը յաջողի երեւան հանել կտակները եւ փոխանցել տալ իրական տէրերուն:

Ապա նոյն ճամբով կը վերադառնայ եւ 1862ի Յունիսին կը հասնի Ռուսաստան, նախ Փեթերսպուրկ՝ ուր ատեն մր կը հանգստանայ իր նեղութեանց եւ երկարատեւ ճամբորդութեան յոգնութենէն, բայց այդ հանգիստն իսկ կ'օգտագործէ Հայաստանի աշխարհագրական քարտէսի մր հրատարակութեան համար նախապատրաստական աշխատանքներ կատարելու: Փեթերսպուրկէն կ'անցնի Մոսկուա եւ ապա կուգայ Նոր Նախիջեւան իր առաքելութեան զեկուցումը տալու զինք լիազօրողներուն: Բայց հազիւ Նախիջեւան հասած, կը ձերբակալուի ոստիկանութեան կողմէ:

Արդարեւ, իր ոխակալ հակառակորդները հրաժարած չէին զինքն հալածելէ եւ իր բացակայութեան իսկ առաջ տարած էին իրենց դաւադիր աշխատանքը, որուն հետեւանքով Նալբանդեանց կը վայելէր «խռովարար ու վտանգաւոր քաղաքացիի մը» համբաւը, մանաւանդ որ կառավարութիւնը գիտէր Թէ դէպի Եւրոպա կատարած իր երկու ճամբորդութիւններու ընթացքին Նալբանդեանց ջերմ շփումներ ունեցած է յայտնի ու ծանօթ յեղափոխականներու եւ ռուս տարագիրներու հետ:

Փարիզ գտնուած միջոցին Նալբանդեանց հրատարակած էր իր « Երկրագործութիւնը որպէս ուղիղ ճանապարհ » յեղափոխական գործը եւ նաեւ «Երկու Տող » վերտառութեամբ տետրակ մը, ուղղուած հայ հոգեւորականութեան դէմ, ուր կը պարզէր անոր բացասական դերը ազգին հիմնական շահերուն հանդէպ: Այս գիրքերը գաղտնօրէն պիտի մտնէին Ռուսաստան, բայց մատնութեան մը վրայ ոստիկանութիւնը ճամբան ձեռք անցուցած էր ծրարները եւ այդ էր Նալբանդեանցի ձերբակալութիւնը հիմնաւորող պատճառը: Բարեբախտաբար այս երկու գործերէն ալ տասնական օրինակ տարբեր ճամբով մտած են երկիր, փրկուելով ստոյգ եւ անդառնալի կորուստէ մը:

Նալբանդեանց կառավարական որոշումով կ'արգելափակուի Ս. Փեթերսպուրկի Պօղոս-Պետրոս բերդը՝ ուր կը մնայ երեք տարիէն աւելի: Իր վաղեմի հակառակորդները յաղթանակած էին:

Բանտային վատառողջ պայմանները, ոստիկանական բրտութիւնները, բարոյական եւ ֆիզիքական տառապանքները բոլորովին կը քայքայեն իր արդէն իսկ խախուտ առողջութիւնը եւ թոքախտը բոյն կը դնէ իր մէջ, օրէ օր հալեցնելով զինքը: Կառավարութիւնը տեսնելով որ բանտին բժիշկը Նալբանդեանցի օրերը համրուած կը նկատէ, կ'արձակէ զայն բերդէն 1865ի վերջերը եւ կ'արտօնէ Ռուսաստանի հիւսիսային անկիւն մը վերջացնել այդ համրուած օրերը: Նալբանդեանց կ'ապաստանի Սարաթով նահանգի Կամիշին քաղաքը: Այդ քաղաքէն է որ կը գրէ.

— « Ամսոյս 7ին մտայ Կամիշին աւելի մեռած քան թէ կենդանի, ճանապարհին քաշածներս անտանելի էին իմ վիճակում, բայց դարձեալ վերջին ուժերս եւ ոգիներս գործ դնելով դիմացայ: Ինձանից շատ նամակ մի պահանջէք, ոչ ուժ կայ, ոչ զօրութիւն: Այս տողերը գրում եմ, բայց կուրծքս եւ թիկունքս ցաւից խեղդում են: Այստեղ ամէնալաւ բժիշկը ինձ պարզապէս ասաց որ օրէ օր մօտենում եմ գերեզմանին, ջերմը ամենայն օր հոգիս է հանում, քրտինքը, ճաղը եւ թուքը թիւ չունին, աւելցուր սրա վրայ իմ անօգնական միայնութիւնը. բժիշկը ինձ պատւիրում է սաստիկ խաղաղութիւն, բայց թողո՞ւմ են խաղաղ, ամենայն քայլափոխիդ բարոյական անախորժութիւնք այստեղի ոստիկանի կողմից: Ինչ օգուտ, գրել չեմ կարող, խոհեմութիւն հասկացիր »:

Նալբանդեանց իր մի քանի կարեւոր աշխատութիւնները պահ դրած էր բարեկամներու մօտ: Այս վերջինները, Նալբանդեանցի ձերբակալուած ատեն, որպէս մեղսակից չենթարկուելու համար ոստիկանական հետապնդումներու, այրելով կ'ոչնչացնեն այդ ձեռագիրները: Բերդէն արձակուելէ վերջ Նալբանդեանց կ'ուզէ տիրանալ անոնց, բայց տեղեկանալով անոնց փճացումին՝ դառնութեամբ կը գրէ.

— « Ափսո՛ս, մինչեւ այժմ իմ բոլոր գրածները ոչինչ էին համեմատաբար այդ տետրակների, որոնց մէջ գրած էի եւրոպական ներկայ գաղափարների երկար քննութիւնը, համեմատած Հայոց ներկայ վիճակին »:

Կամիշինի մէջ ալ քանի մը ամիս նոյնքան դառն եւ յուսահատ օրեր ապրելէ վերջ, Միքայէլ Նալբանդեանց 13 Մարտ 1866ին կը կնքէ այնքան խռովայոյզ եւ փոթորկալից կեանք մը: Եւ սակայն իր անունը պիտի մնայ երկար, որովհետեւ հայութեան իրապէս քանքարաւոր ու նուիրուած զաւակներէն մին եղած է:

Լիովին գիտակցելով իր մօտալուտ վախճանին, ուզած է թաղուիլ իր հայրենի եւ սիրելի քաղաքը: Մարմինը կը փոխադրուի Նոր Նախիջեւան՝ ուր սգակիր հսկայ բազմութեան մը ներկայութեամբ կ'ամփոփուի քաղաքին մօտ Ս. Խաչ վանքը: Քսանեւվեց տարի վերջ իր քով պիտի թաղուէր նաեւ միւս տաղանդաւոր Նախիջեւանցին, Քամառ Քաթիպա:

Նալբանդեանցի բանտի նամակներու արտագրութեան մէջ, հարազատութեան մտահոգութեամբ անփոփոխ պահեցինք հնամենի ձեւերը, որոնց մէջ աչքի կը զարնէ մասնաւորապէս կրաւորական բայերը «Վ»ով գրելու սովորութիւնը: Նալբանդեանցի կէտադրութիւնն ալ տարակուսելի է: Լայնօրէն կը գործածէ միջակէտը, գրեթէ անտեսելով վերջակէտը:

ԲԱԲԳԷՆ ԳԱՎԷՋ

## Երեսնամեայ պանդխտութիւն

Մօտ երեսուն տարի առաջ, քաղաքական անողորմ կացութեան մը հարկադրանքով, հայ ժողովուրդի ստուարաթիւ բազմութիւններ, ճակատագրականօրէն կը թողէին իրենց պապենական ծննդավայրերը, նոր արհաւիրքի մը մտավախութեամբ:

1940ի Ֆրանսայի սեւ օրերուն, մենք ականատես եղանք տեղացի ժողովուրդին հոգեկան տագնապին, երբ թշնամիին արշաւանքին առջեւ խուճապահար, կը լքէր տուն, աշխատանք, ապաստանելով աւելի հեռուն, տարբեր գիւղերու կամ քաղաքներու մէջ: Բայց Ֆրանսացի գաղթականը, որքան ալ դառնութեամբ բաժնուէր իր հնաւուրց բնակավայրէն, նոր բոյնին մէջ, դարձեալ կը շնչէր իր հարազատ հայրենիքի երկնքին տակ:

Նոյնը չէր պարագան Հայուն համար: Գաղթականի ցուպը ձեռքին պիտի ցրուէր աշխարհի 4 մասերուն վրայ, դէպի բոլորովին անծանօթ, անհարազատ ափեր, ծով, ովկիանոս, լեռ ու ցամաք ճեղքելէ վերջ: Արեւմտեան ափերու վրայ մանաւանդ, բոլորովին տարբեր հոգեբանութեամբ եւ բարքերով միջավայրի մը պիտի խառնուէր ան: Կեանքի ընթացքը, ապրելու եղանակները վեր ի վայր պիտի շրջէին: Մէկ անձի աշխատանքով ամբողջ ընտանիքի մը նեցուկ դառնալու Արեւելքի հնարաւորութիւնը գոյութիւն չունէր այս վայրերուն մէջ: Ծնողք ու որդիք, բոլորն ալ պարտաւոր էին նետուիլ հացի պայքարին մէջ, որ կը մղուէր գործարանային աշխատանքով: Ի բնէ չարքաշ եւ աշխատասէր եկուոր Հայը, դիւրութեամբ պիտի վարժուէր այդ նոր կենցաղին: Իր ճարտարութեամբ եւ աշխուժութեամբ, ան շուտով պիտի արժանանար գործարանատիրոջ գնահատանքին: Քրտնաթոր վաստակի տարիներու խնայողութեամբ, հայ աշխատաւորները, շատ անգամ իրենց իսկ ձեռքով, կը շինէին սեփական տնակներ իրենց համախմբուած ոստաններուն մէջ, Միջերկրականի եզերքներէն մինչեւ Ռօնի ու Սէնի ափերուն փռուած տասնեակ գիւղեր կամ գիւղաքաղաքներ, շէն ու կենդանի հայկաւաններու վերածելով: Տարիները կը սահէին արագընթաց: Մեծ թիւով երիտասարդ աշխատաւորներ, աւելի նպաստաւոր ասպարէզի մը լծուելու ակնկալութեամբ, աշխատելով հանդերձ գործարաններու մէջ, իրենց գիշերային հանգիստի ժամերը կը զոհէին, յարատեւ ճիգով ու եռանդով սորվելու համար ընթացիկ արհեստներ, եւ անոնք այժմ, տեղական աշխատանոցներու, կամ անհատներու կողմէ փնտռուած վարպետներն են դարձած: Ուրիշ շատեր, գործնական ընդունակութեամբ, եղան վաճառորդներ կամ առեւտրականներ:

Տնտեսական գետնի վրայ, բազուկի ուժով կամ ճարպկութեամբ ձեռք բերուած նուաճումին զուգընթաց, հաւաքական գործակցութեամբ ընդհանուր եռուզեռի մէջ, հայկական կեանքի կենդանութիւն մը կը ստեղծուէր: Յաջորդաբար կը ծլէին հայրենակցական, ընկերային եւ մշակութային կազմակերպութիւններ կամ միութիւններ, յաճախակի հանդիսութիւններով խանդավառութեամբ կ'ոգեկոչուէին ցեղին պատմական հերոսապատում դրուագները, կռուի, մտքի ու գրչի ռահվիրաներու յիշատակին նուիրուած տարեդարձները: Այս բոլորը հոգեկան հայրենիքի մը հեշտութիւնը կ'ընծայէին տարագիր բազմութեանց հայրենածարաւ սրտերուն մէջ: Հեռու ծննդավայրի ներշնչման աղբիւրներէն, հեռու Մասիսէն ու Արաքսէն, վտարանդի հայ գրական ծաղկաստանն ալ իր կարգին կ'ուռճանար արդասաբեր վարուցանով: Մեսրոպեան տառերը շարժման մէջ էին շողեպինդ. հայ տպագրական մեքենան անդուլ կը բանի. թերթեր, հանդէսներ ու գիրքեր հատորներով եկան լոյս աշխարհ ամէն օր եւ պարբերաբար հայեցի մտաւոր սնունդն ու ընթերցանութեան սփոփանքը տալով ուսումնատենչ պանդուխտ բեկորներուն:

Այս խրախուսիչ իրականութեան կողքին, գէթ այսօր, պիտի չուզէինք արձանագրել միւս մռայլ պատկերը, նոր սերունդի այլասերման սպառնալիքը, որ բոլորովին ուրիշ էջ մըն է: Հարկ է, արդար երախտագիտութեան խօսքը յայտնել գաղթական հաւաքականութեան, որ խորթ ափերու վրայ, շատ անգամ նիւթական կամ բարոյական հազարումէկ փորձութեանց ու դառնութեանց մէջ, անխախտ պահեց իր ազգային գիտակցութիւնը, սէրն ու զգացումները, եւ այսօր, քառորդ դարէ աւելի իր ոտքերը կտրուած հայրենի հողերէն, աւելի քան երբեք կառչած կը մնայ անոր, իր գործունէութեամբ, հաւատքով, յոյզերով եւ յոյսերով:

ԳԵՂԱՄ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ
« ՅԱՌԱՋ »Ը



ԶԱՒԱՐԵԱՆ



ՔՐԻՍՏԱՓՈՐ



ՌՈՍՏՈՄ

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԲԻՒՐՈՅԻ

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴ,

Ընկերներ, բարեկամներ, համակիրներ ,

1890ին, վաթսուն տարի առաջ, հայ կեանքի արիւնոտ արգանդէն աշխարհ եկաւ Հ. Յ. Դաշնակցութիւնը :

Խաւար դարերը անթիւ վէրքեր կուտակած էին մեր ժողովուրդի հոգիին ու մարմնին վրայ :

Հզօրները իրենց միջեւ բաժնած էին մեր հողը:

Արհաւիրքները կոտորակած էին մեր ժողովուրդը :

Կրօնքները յարանուանական դիծով բաժանման նոր վիհ մը փորած էին մեր մէջ :

Եւ, ի լրումն այս բոլորի, պատմական դէպքերու բերումով, ամէնէն յետամնաց, ամէնէն բարբարոս ցեղերը մեծազանգուած բազմութիւններով խմբուած էին մեր հողերու վրայ եւ գրեթէ ամէն կողմէ պաշարած մեր ժողովուրդը:

Մեր երկրի ո՛չ քաղաքական պայմանները, ո՛չ տնտեսական եւ ոչ ալ մեր ժողովուրդի բարոյական վիճակը փրկութեան յոյս կը ներշնչէին Հայկ. Դատի նոր ուխտաւորին՝ Հ.Յ.Դաշնակցութեան :

Միայն ստոյգ մահը աչք առնելով, միայն կանխապէս ամէն զոհողութեան յօժարելով՝ կարելի էր ոտք դնել Հայ Ազատագրական Շարժման արիւնոտ ճանապարհին վրայ :

Մարդկային պատմութեան վերջին վաթսունամեակը լի է դարերու կշիռ ունեցող դէպքերով :

Դարերու կշիռ ունեցող դէպքերով լի է նաեւ հայ կեանքը :

Ու լի է նաեւ Հ. Յ. Դաշնակցութեան պատմութիւնը :

1890էն այս կողմ, վաթսուն տարիներու ձիգ տարածքին, եղած չէ հայութեան ճակատագրին կապուած քիչ – շատ արժէք ունեցող դէպք մը, որուն մէջ իր դերը ունեցած չըլլայ Հ. Յ. Դաշնակցութիւնը :

Ան կամ ինք հեղինակած ու վարած է այդ դէպքերը եւ կամ, եթէ հեղինակած ու վարած չէ, միշտ ներկայ գտնուած է այդ դէպքերուն եւ միշտ իր բաժին մասնակցութիւնը բերած անոնց :

Գրել հայ ժողովուրդի վերջին 60 տարիներու պատմութիւնը, այս գրեթէ պիտի նշանակէր գրել Հ. Յ. Դաշնակցութեան պատմութիւնը :

Գրել Հ. Յ. Դաշնակցութեան 60ամեայ պատմութիւնը՝ նոյն ձեւով գրեթէ պիտի նշանակէր գրել այդ ժամանակաշրջանի Հայոց պատմութիւնը :

Այսքան սերտօրէն եւ այսքան գործօն կերպով Դաշնակցութիւնը միաձուլուած ու միաշաղախուած է իր ժողովուրդի պատմութեան, անոր կեանքին ու ճակատագրին :

60 տարիներ շարունակ անընդհատաբար գործելով, յաճախ առանցքը կազմելով ամէնէն արիւնոտ արարներու, մերթ ծանրօրէն պարտուելով ու մերթ յաղթանակելով, Դաշնակցութիւնը կրնար նաեւ սխալիլ :

Հայ կեանքի ապագայ պատմիչը իր արդար իրաւունքին մէջ պիտի ըլլայ՝ Դաշնակցութեան սըխալները մատնանշելով :

Սակայն ոչ ոք երբեք պիտի կրնայ ըսել, թէ Դաշնակցութիւնը որեւէ ատեն, պայքարի ամէնէն դժնդակ պայմաններու տակ իսկ, երբ ստոյգ մահը ծառացած է իր դէմ, լքած է իր դիրքերը եւ մինակ ձգած է իր ժողովուրդը :

Ոչ ոք ու երբեք պիտի կրնայ ըսել, թէ Դաշնակցութիւնը որեւէ ատեն խուսափած է որեւէ զոհողութենէ, երբ այդ պահանջած է իրմէ հայրենիքի շահը :

Առանց համեստութեան ու ճշմարտութեան դէմ մեղանչած ըլլալու, այսօր, Դաշնակցութեան 60ամեայ յոբելեանին, բաց ճակատով ու բարձրաձայն կրնանք վկայել, որ ոչ մէկը քաղաքական կուսակցութեանց մէջ — ոչ միայն հայ, այլեւ օտար — այնքան քաջ ու խիզախ եղած է իր պայքարին մէջ, որքան Դաշնակցութիւնը :

Ամենազդի քաղաքական հոսանքներու մէջ եւ ո՛չ մէկը յանուն իր դաւանած գաղափարներու այնքան առատաբար արիւն թափած է, որքան Դաշնակցութիւնը :

Անոնցմէ եւ ոչ մէկը այնքան մեծ թիւով մահակիրներ ունեցած է իր շարքերուն մէջ, որքան Դաշնակցութիւնը :

Եւ այդ իսկ պատճառով անոնցմէ եւ ոչ մէկը այնքան շատ զոհեր տուած է, որքան Դաշնակցութիւնը :

Այս ծով – արիւնը անխորտակելի դահ մը կերտած է Դաշնակցութեան համար հայ ժողովուրդի հոգիին մէջ :

Այս ծով–արիւնը արիութեան պսակ մը հիւսած է մեր ժողովուրդի գլխուն :

Այս ծով–արիւնը բարձր նկարագիր կերտած է տակաւին երէկ կորացած ու խեղճ հայ մարդուն մէջ :

Քաջութիւն, հայրենասիրութիւն, անձնազոհութիւն, պարկեշտութիւն, հաւատարմութիւն , ընկերասիրութիւն, ազնուութիւն, ճշմարտախօսութիւն եւայլն, եւայլն,— այս բարձր ու առաքինի գիծերը առաւելաբար Դաշնակցութիւնը ստեղծեց հայ մարդու մէջ իր 60ամեայ ազատագրական շքեղ պատմութեամբ, լի ամէնէն յանդուգն, ամէնէն անձնուէր, ճշմարտօրէն հէքիաթային դրուագներով :

60 տարի մաքառելով՝ ստեղծեց հոգեկան հարըստութիւն մը, ճշմարիտ գանձ մը, ստեղծեց այս բարձր ու առաքինի յատկութեանց խտացումը հանդիսացող Դաշնակցականութիւնը, շատ աւելի զօրաւոր ու տոկուն ուժ մը, քան թերեւս ինքը Դաշնակցութիւնը :

1890էն մինչեւ այսօր 60 տարիներ անցած են:

Եւ այսօր՝ իր նոր կեանքի սեմին՝ Դաշնակցութիւնը նոյնքան ամուր է իր հաւատքին մէջ , նոյնքան խանդավառ՝ իր շարքերով, նոյնքան կուռ՝ իր կազմակերպութեամբ, որքան 60 տարիներ առաջ :

Ու նաեւ այսօր, հակառակ իր հալածական վիճակին, ան վերստին տիրական ուժն է, վարիչ բազուկը հայ կեանքի:

Գաղթաշխարհի հայութիւնը կ'ապրի ու կը գործէ առաւելաբար իր շունչին տակ :

Իբրեւ մտայնութիւն ինք կ'իշխէ հայրենի երկրին մէջ:

Եւ բանտերն ու աքսորավայրերը առաւելաբար իր ուխտեալներով են լեցուն :

Հայ կեանքը այսօր ստորաբաժանուած է Դաշնակցութեան դրօշով :

Հայը կա՛մ հայրենի երկրին տիրակալած օտարին հետ է Դաշնակցութեան դէմ, եւ կամ Դաշնակցութեան հետ է այդ օտարին դէմ :

Այլ բաժանում հայ կեանքի մէջ չկայ :

Եւ այդ պատճառով այնքան կատաղի, այնքան թունոտ եւ այնքան ատելավառ կիրք կայ այն պայքարին մէջ, զոր մեր հայրենիքի զոյգ հատուածներուն տիրացած օտար ուժերը կը տածեն Դաշնակցութեան դէմ :

Սակայն այս ատելութիւնը, այս մշտաբորբոք ու կատաղի պայքարը միաժամանակ անսուտ վկայութիւն մըն է այն ուժի մասին, որ կը ներկայացնէ Դաշնակցութիւնը :

Բոլոր քաղաքական հոսանքներու մէջ, զօրծակից թէ հակառակորդ, հայ թէ օտար, Հ. Յ. Դաշնակցութիւնը իրեն հասակակից ոչ ոք ունի:

Իրեն հետ ծնած բոլոր հոսանքները, ըլլա՛յ Թուրքիոյ, ըլլա՛յ Ռուսիոյ մէջ, կամ մեռած են ընդմիշտ, կամ եթէ կ'ապրին, ապա դադրած են ազդու ու կենդանի ուժ մը ըլլալէ :

60 տարիներուահեղ փոթորիկներու մէջ անվթար պահելով — ու գրեթէ նոյնը պահելով — իր հոգեկան, բարոյական ու քաղաքական գանձը՝ դաւանանք, դրօշ, անուն, կազմակերպական կառոյց, զինանշան եւայլն, Դաշնակցութիւնն այսօր իր նոր պատմութեան սեմին, լի է անսահման կորովով՝ նոր տասնամեակներ թեւակոխելու համար :

Ան նաեւ այսօր կը մնայ ամէնէն յուսատու բազուկը հայ ժողովուրդի եւ ամէնէն հաւատարիմ պահակը հայ երկրի :

Ո՞ւր որոնել բացատրութիւնը այս հմայիչ երեւոյթին, եթէ ոչ Դաշնակցութեան անմահ գաղափարներուն, Դաշնակցութեան պատմակշիռ գործերուն եւ Դաշնակցութեան ողջ թէ մեռած գաղափարակիրներուն մէջ, որոնք արժանի դրօշակիրները հանդիսացան իրենց փառաւոր կուսակցութեան :

Հա՛յ ժողովուրդ, ընկերնե՛ր, բարեկամնե՛ր եւ համակիրնե՛ր, այս հանդիսաւոր պահուն, երբ մենք մեր փառաւոր պատմութեան 60ամեայ յոբելեանը կը տօնենք, Հ. Յ. Դաշնակցութեան Գերագոյն Մարմինը բարոյական պարտք կը զգայ երկիւղածօրէն իր գլուխը խոնարհել յիշատակին առջեւ այն բիւր – բիւրաւոր անուանի թէ անանուն, ծանօթ թէ անծանօթ, թաղուած թէ անթաղ նահատակներուն, որոնք փառքի մեծագոյն բաժինն ունին Դաշնակցութեան յոբելեանին մէջ :

Հ. Յ. Դ. Գերագոյն Մարմինը, այս նուիրական պահուն, յանուն Դաշնակցութեան իր ջերմ ողջոյնները կը յղէ բոլոր անոնց, որոնք թրքական թէ բոլշեւիկեան բանտերուն, արգելարաններուն եւ աքսորավայրերուն մէջ, հակառակ բոլոր հալածանքներուն եւ անմարդկային տառապանքներուն, մոլեռանդաբար կը պահեն իրենց հաւատարմութիւնը Դաշնակցութեան անբիծ եւ արիւնոտ դրօշին :

Հ. Յ. Դ. Գերագոյն Մարմինը իր ողջոյնները կը յղէ նաեւ Դաշնակցութեան բոլոր մարմիններուն, ընկերներուն, բարեկամներուն եւ համակիրներուն, որոնք այսօր, աշխարհի բոլոր մասերուն մէջ ձեռք – ձեռքի, հաւատքով ու զոհողու –



Է. ԱԿՆՈՒՆԻ



ՍԻԱՄԱՆԹՕ



ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ



Ռ. ԶԱՐԴԱՐԵԱՆ



Դ. ՎԱՐՈՒԺԱՆ

# Շունչը

Պոլսոյ Դաշնակցական պաշտօնաթերթ Ազատամարտի քարտուղար եղած շրջանիս, խմբագրատան վերի յարկը, սենեակ մը ունէինք Գեղամ Բարսեղեան, Բարթող Զօրեան (ժիրայր) եւ ես:

Ցարակից սենեակին մէջ Ս. Զաւարեանը կը բնակէր, իսկ մեր սենեակի դիմացը՝ ընկեր Ա. Վռամեան:

Ամէն իրիկուն, Սիմօնը, ինչպէս կը սիրէր որ կոչէինք զինքը, մեր սենեակին դուռը կը զարնէր, եւ կ'ըսէր.— «Վարդան, սամավարը տաք ա՛». եւ ես պիսքիւիի տուփս առած, կը մտնէի իր սենեակը, ուր վեց – եօթը բաժակ թէյ կը խմէինք:

Բնականօրէն՝ մեր խօսակցութիւնը կը դառնար Դաշնակցութեան եւ անոր հետ կապուած հարցերու շուրջ:

Իրիկուն մը Սիմօնին հարց տուի.— «Քրիստափորի մահէն ետք, մեր Երրորդութենէն կը մնաք դուք եւ Ռոստոմը, անշուշտ երկուքդ նոյն օրը պիտի չմեռնիք, բայց ձեր երկուքի մահէն վերջ, ո՞վ պիտի վարէ կուսակցութեան գործը, նոյն հեղինակութեամբ եւ հմայքով:

Զաւարեան պատասխանեց.

— «Դաշնակցութեան հմայքը եւ ուժը անհատներու մէ կապէք: Դաշնակցութիւնը շունչ մըն է, որ պէտք է տեղաւորուի եւ ամրանայ ամէն ընկերոջ սրտին եւ հոգիին մէջ, եւ փոխանցուի ընկերէ ընկեր, նոյն խանդով եւ ուժով: Մեզմէ ան, որ վերջին մեռնողը պիտի ըլլայ, պիտի փչէ իր շունչը, եւ որու վրայ որ իյնայ, ան պիտի շարունակէ Դաշնակցութեան գործը եւ պիտի վարէ զայն: Զենք գիտեր թէ որու վրայ պիտի իյնայ այդ շունչը՝ որ սուրբ է եւ ներգործող: Զենք գիտեր թէ գործիչի՞ մը, ուսուցչի՞ մը, զինուորականի՞ մը, պարզ զինուորի՞ մը, կամ ինչպէս կ'ըսէք՝ «շալվարով կնո՞ջ մը»: Ահա ա՛ն է որ պիտի տանի մեր կուսակցութեան գործը, որուն հոգին, սիրտը եւ մէջքը պիտի կրէ սուրբ գործին ծանրութիւնը, մինչեւ իր մահը, եւ այսպէս, շարունակաբար: Մեր ժողովուրդի շունչն է այդ, որ տարածուելով, պիտի իյնայ, անոր հաւատացող հոգիներու մէջ, եւ արգասաւորէ մեր գործը»:

Բոլորս ալ կը հաւատանք այդ շունչին, որ երբեք պիտի չմարի, եւ առկայծող կանթեղի մը, ու անթեղուած կրակի մը պէս, պիտի պլպլայ, ու մոխիրը տաք պահէ՝ մինչեւ կրկին արծարծուիլը, առանց ազդուելու փոթորիկներէ եւ սառնամանիքներէ:

Շատոնց է որ կը հարուածեն Դաշնակցութիւնը, կ'աշխատին տապալել, եւ կը յայտարարեն մեռած, թաղուած:

Դաշնակցութիւնը եթէ մեռնէր իսկ, յարութիւն պիտի առնէր: Մնաց որ ան կը քալէ անվեհեր եւ անդեղեւ, հաւատաւոր իր ուժին, իր շունչին:

Անիկա կ'ուզէ շունչի եւ շարժումի ազատութիւն:

Ընկեր Զաւարեան՝ նոյն իրիկունը՝ կ'ըսէր.— «Հաւատացէք Դաշնակցութեան համակիրներուն, որոնք աւելի պիտի ստուարանան, երբ մենք կը պահենք մեր շունչը, եւ անով կը վարակենք մեզի հաւատացողները»:

Դաշնակցութեան հաւատացողներու թիւը շատ աւելի է քան իր ընկերներու թիւը, վասնզի անոր խտէալը եւ աշխատանքները միայն հայ ժողովուրդին համար են: Ինք այդ ժողովուրդին հաւատաւոր զաւակն է, եւ իր քայլերը կ'առնէ անոր Ազգային ամրապնդումի եւ ազգային պահպանման համար, առանց խորթ, պատեհապաշտ եւ ազգուրաց տատանումներու:

Հիմնադիրներու շունչը սուրբ է եւ մաքուր եւ անոնց հետեւորդները կը մնան ու պիտի մնան այդ շունչին տակ, ինչ պարագաներու մէջ ալ շարունակուի հայ ժողովուրդի կեանքը:

Զ. ՎԱՐԴԱՆ

# Դաշնակցութեան Ժառանգը

Ժամանակին մենք էլ ունեցել ենք մեր թագաւորները, նախարարները, դեսպանները, սպարապետներն ու զօրավարները, որոնք յաճախ Հարստութիւնների ու Տոհմերի բաժանուած, երկար դարեր շարունակ պայքարել են թշնամի աշխարհակալ բանակների դէմ. երբեմն էլ նոյն իսկ օտար որեւէ պետութեան հետ զինակցած՝ հայկական այս կամ այն տոհմի դէմ: Եւ հետեւանքը եղել է այն, որ բոլորն էլ քայքայուելով, մեր ժողովրդին մատնել են գերութեան:

Հայկական հին Հարստութիւններից եւ Տոհմերից մնացել են միայն իրենց շողշողուն անունները, որոնք դեռ կրում են իրենց իրաւազուրկ շառաւիղները. Բագրատունի, Ռշտունի, Պահլաւունի, Կամսարական, Իշխ. Արղութեան, Իշխ. Բեհբութեան, եւ բազմաթիւ Մելիքներ:

Մեր պատմութեանը քաջածանօթ մի հմուտ գրիչ, Սարհատ ստորագրութեամբ, «Հայրենիք»ի 1949 թ. Նոյ. 27ի համարի մէջ, «Դաշնակցութիւնը Հայոց Պատմութեան ծնունդն է» խորագրով յօդուածում, տուել է նաեւ մեր պատմութեան հակիրճ պատկերը, զոր արժէ ոչ միայն կարդալ ու անցնիլ, այլեւ գրի առնել ու պահել: Ահաւասիկ այդ յօդուածի էական մասը,— «Հայոց Պատմութիւնը կը ներկայանայ մեզի հետեւեալ հարստութիւններով.—

Ա.— Հայկազեան Հարստութիւն. 608էն մինչեւ 190 թուականը Քրիստոսէ առաջ: Անիկա մեր աւանդական պատմութիւնն է, այսինքն՝ բացատրութիւնը Հայու հոգիին տենչանքներու նկարագրին: Աւանդական Հայկ Նահապետը խորհրդանիշն է մեր ազգային ազատատենչ ոգիին, եւ ինքն է որ մարմին կ'առնէ մեր պատմութեան բոլոր հերոսներուն դէմքերուն մէջ:

Բ.— Արտաշիսեան Հարստութիւն, Քրիստոսէ առաջ 190էն մինչեւ Քրիստոսի մէկ թուականը: Անիկա մեր իսկական պատմութեան հիմնադրութիւնն է: Այս շրջանին մէջն է որ կը յայտնուին Արտաշէսը, մեր անկախութեան հիմնադիրը եւ Մեծն Տիգրանը, մեր պատմութեան անհաւասարելի փառքը:

Մէկէն մինչեւ 53 թուականը Հայաստանը կ'իյնայ օտար տիրապետութեան տակ:

Գ.— Արշակունեանց Հարստութիւն. 53էն մինչեւ 430 թուականը: Տրդատէն ու Գրիգոր Լուսաւորիչէն մինչեւ Սահակ Պարթեւ ու Արտաշէս Գ.ը, Արշակունեաց վերջին թագաւորը:

Դ.— Մարզպանութեան շրջանը, 430էն մինչեւ 640 թուականը: Այս շրջանին Հայաստանը կը կառավարուի Պարսիկներու կողմէ նշանակուած մարզպաններով (կուսակալ): Սակայն Մամիկոնեան Վարդանն եւ Վահանը իրենց դիւցազնական պայքարներով կը վառեն Հայրենիքի ազատութեան ոգին եւ կ'ապահովեն խղճի ու կրօնի ազատութիւնը:

Ե.— Արաբական տիրապետութիւնը. 640էն մինչեւ 895 թուականը: Հայաստանը կը հեծէ արաբ ոստիկաններու անողոք մականին տակ, բայց Մամիկոնեան Գայլ Վահանն ու հոյակապ Թաթուլը իրենց անվեհեր քաջութիւնով կը փրկեն ու կը զարդարեն մեր պատմութիւնը:

Զ.— Բագրատունեանց Հարստութիւնը, 895–էն մինչեւ 1064 թուականը՝ Անիի անկումը, որով կը վերջանայ Հայոց թագաւորութիւնը Հայաստանի մէջ:

Բագրատունեանց արքաները իրենց քաջութեամբ ու մանաւանդ շինարարութեամբ փառքը կը կազմեն մեր պատմութեան: Անի իր 1001 եկեղեցիներով արքայանիստ քաղաքն է Բագրատունեաց Տան, ու վերջին թագաւորը անոր, Գագիկ Բ.ը: Սելճուքեան արիւնարբու Ալփ – Ասլան կը գրաւէ Անին 1064ին, մէկ օրուան մէջ քարուքանդ կ'ընէ այն բոլոր շինութիւնները, ինչ որ Հայկ. Հանճարը ստեղծած էր դարերով: Անիի անկումով կը վերջանայ Հայաստանի մէջ Հայոց անկախութիւնը: Սակայն Կիլիկիոյ մէջ կը հիմնուի Ռուբինեանց թագաւորութիւնը, որ կը տեւէ 1080էն մինչեւ 1393 թ.:

Այս փոքրիկ համառօտագրութիւնը Հայոց Պատմութենէն՝ ցոյց տալու համար թէ 1064 թ.էն սկսեալ Հայաստանը կը հեծէ գերութեան մէջ: Կան միայն տեղական կիսանկախ վիճակներ եւ ըմբոստութիւններ, որոնցմէ յիշատակութեան

# Երբ ստրուկ էր անբարբառ…

—« Դու գիտես, ո՛վ հաւատարիմ ժողովուրդ Հայոց, մարդիկ եւ ազգեր կան, որ այնչափ հաւատարմութիւնդ կը ծաղրեն եւ կը մեղադրեն քեզ, երբ կը տեսնեն, որ խիստ անմռունչ եւ անզգայ կը լինես հաւատարմութեանդ մէջ, մինչեւ անշունչ, անբարբառ դիակ մը կը դառնաս դու, այնպէս որ քու պարկեշտութիւնդ կը նշաւակեն եւ կոխկռտելով կ'անցնին վրայէդ եւ դու չես իմանար: Միթէ՞ գոհհաց կայ ես դու աշխարհիս երեսին, ես էլ կը դատեմ քեզ, թէ այդչափ ստրկանաս եւ աղարտես մարդկային ազատ պատիւ»: (Խ. Հայրիկ: Վանդոյժ)

Օսմանեան դարաւոր սպանիչ լուծին տակ, այսպէս կ'ապրէր Հայը իր պատմական հայրենիքին մէջ:

Թմրած էին պանծալի նախահայրերուն առաքինութիւնները: Կը տիրէր արգահատանքի եւ ծաղրի արժանի հաւատարմութիւն միայն՝ ուժեղին, բռնակալի, տիրողի եւ իշխանաւորի:

Բարձրաձայն լացն ու ողբն անգամ մեղանչում, նախախնամութեան կամքին դէմ՝ ըմբոստացում, հաւատարմութեան կարգին դէմ՝ անկարգութիւն կը նկատուէր:

« Աստուածային տնօրինութիւն» մը ընդունեց Հայը, ստրկութեան ամէնէն նուաստացուցիչ եւ քստմնելի իր կեանքի պայմանները:

Քրիստոնէական չըմբռնուած, աղճատուած, նեղ եւ տգէտ վարդապետութիւնը աւելի կը զօրացնէր ստրուկը, անկենդան եւ անբարբառ արարածի մը վերածելով զայն:

Հայը ուրուականն էր —դէմքով ու մարմնով միայն— իր նախահայրերուն: Կարծես մոռցած էր իր դարաւոր պատմութիւնը եւ ծագումը:

Հայը Հայոց պատմական աշխարհին մէջ, մոռցած էր իր մարդկային կոչումը եւ իր տարրական իրաւունքները:

Արեւմտեան Հայաստանը, վերածուած էր « հայկական դժոխքի », իսկ հայութիւնը՝ բանաւոր հօտի:

Հայոց մտաւորական զարթօնքը, որ սկսաւ ԺԹ. դարու առաջին կիսուն, հայրենիքէն դուրս, ժամանակակից մտաւորական կեդրոններու մէջ էր, որ կը հոլովէր իր զարգացման ընթացքը:

Այս մռայլ եւ մութ, սեւ ու սպանիչ, խղդող եւ անշունչ մթնոլորտին մէջ, անարձագանգ կը մնային սթափումի, սրբազան ընդվզումի եւ ինքնապաշտպանութեան աստուածաշունչ կոչերը:

Արձագանգ չէին գտներ նոյնպէս, հայրենիքի հինաւուրց եւ նուիրական մենաստաններու խուցերէն արձակուած հրաշունչ կոչերն ու յորդորները:

Այս համատարած ողբերգութեան մէջ, որեւէ հրաշք անգամ պիտի չկրնար փոխել «Հայաստանցի»ի վիճակը: Անհրաժեշտ էր ամէն բանէ առաջ զայն գիտակից դարձնել իր ֆիզիքական, նիւթական եւ բարոյական զրկանքներուն: Անհրաժեշտ էր անոր կիսով մը անբանացած մտքին մէջ ապրեցնել՝ տառապանքի եւ ինքնասիրութեան զգացումը եւ գիտակցութիւնը:

Ստրկացած եւ անբանացած չնչաւոր էակը՝ նախ պէտք էր մարդանար, վերակենդանացնելով մարդը՝ իր հոգեկան եւ բարոյական գիտակցութեամբ:

Հայկական իր դիմագիծը, ազգային նկարագիրն ու կոչումը՝ առկէ յետոյ միայն պիտի կրնային զինք դնել իր ազգային պայքարի փրկարար ճամբուն վրայ:

Այս յեղաշրջումը անհնար էր կատարել խաղաղ քարոզութեամբ, գրականութեամբ, աղօթքով կամ « օտար » միջամտութեամբ:

« … Երբ մարդ այնպիսի երկրի մը մէջ կ'ապրի, ուր կեանքն ու ինչքը անապահով են, հարկ անհրաժեշտ է, որ կրէ իր վրայ ինչ որ իւր կենաց, ընչեց եւ պատուոյ ապահովութեան համար պէտք է »:

Մեր ժողովրդի կորստեան դէմ, իբրեւ փրկութեան միակ միջոց մատնանշուած այս պատգամը — ոչ առաջին եւ միակ — դեռ 70ական թըւականներուն արձակուած «Մամուլ» թերթին էջերէն, պէտք էր որ իր գործնական արձագանգը գտնէր բուն իսկ երկրին մէջ:

Զարթօնքը հայ մշակոյթին՝ Պոլսոյ, Թիֆլիսի եւ հեռաւոր մտաւորական կեդրոններուն մէջ, անտարակոյս մեծ նուաճումներ կատարեց մինչեւ 90ական թուականները:

Հայ միտքը յեղաշրջուած էր, «Հայկական դժոխք»էն դուրս:

Հոգեկան այս յեղաշրջումը «Հայաստան »էն հեռու, կրնար տարբեր ընթացքով առաջնորդել Հայը, եթէ մնար անհաղորդ հայրենիքի իրականութեան:

Ինքնապաշտպանութեան, ըմբոստացումի, եւ սրբազան ընդվզումի հրաշունչ ճառերն ու երգերը, պէտք էր իրենց գործնական արձագանգը գտնէին բուն հայրենի հողին վրայ:

80ական թուականներէն վերջ, այս ուղղութեամբ կատարուած մասնակի փորձերէն ետք հըրապարակ եկած քաղաքական կուսակցութիւններն էին, որ պիտի կատարէին փրկարար յեղաշրջումը:

Առանց ստորագնահատելու Արմենական եւ Հընչակեան կուսակցութիւններու դերը այս մարզին մէջ, իրողութիւն է որ Դաշնակցութեան վիճակուեցաւ իրական դերը:

Այդ մասին յաջորդով:

Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

---

ՊՈՒՏ'Մ ԾԻԾԱՂ

# Արժանի «պատիժը»…

Ո՛րքան երջանիկ էինք երբ Դաշնակցութիւնը չէր ծնած: Խաղաղ – հանգիստ:

— « Ուլան ք… կեավուր»:

— Հրամմեր էք, Մէմիշ աղա…

— Խօզի զաւակ, թէեւ կեավուր ես, բայց լաւ մէկը կ'երեւաս:

— Շատ շնորհակալ եմ, պէյս: Ձեր ազնուութիւնն է այդ…

— Ուլան անունդ ի՞նչ է:

— Ձեր խոնարհ ծառան, ձեր ոտքի փոշին՝ Խաչատուր… Երջանիկ օրեր:

Եկաւ Դաշնակցութիւնը եւ ամէն ինչ տակն ու վրայ ըրաւ: Ի՛նչ վնասներ չէ հասցուցած Ան:

Անոր վաթսունամեակին առթիւ՝ փունջ մը անոնցմէ՝ իբրեւ նուէր:

Մինչեւ երեւումը այդ կուսակցութեան, Թուրքն ու Քիւրտը, խաղաղօրէն իրենց բռնարուեստը ի գործ կը դնէին հայ ժողովուրդին վրայ:

Եկան Դաշնակցականները եւ իրենց հետ բերին մեզի իբրեւ նուէր՝ «բողոք», «ազատութիւն», « իրաւունք» անունով հիւանդութիւնները…

«Դուն ալ մարդ ես, բոլորին հաւասար» Ազգ եւ ժողովուրդ ես: Բարձր մշակոյթ ունիս»ի պէս տղայական մտքեր դրին մեր գլխուն մէջ:

Կ'արժէ՞ր այս տեսակ նախապաշարումներու համար, Պոլսոյ «Դրան հայ էֆէնտիներ»ու հանգիստը խռովել: Ջանոնք Պալատի աչքին կասկածելի դարձնել:

Պոլսոյ հայութիւնը իր խանութովը, ժամովը եւ իր տաքուկ տունովը խաղաղօրէն կ'ապրէր՝ փառք տալով հայրախնամ Սուլթանին: Անոր հանգիստն ալ ջուրը ինկաւ:

Հ. Յ. Դ.ն, սնտուկներով «դըսեցի»ի ցաւեր բերաւ Պոլիս, խռովելու համար Ստամպոլսոյ հանգիստը:

Պատռեց Հայուն «հայ – քրիստոնէի» հագուստը եւ անոր հագցուց՝ «հայ – ազգութիւն» տարազը:

Ստիպեց յօրանջողներուն՝ իրենց գիշերանոցներէն դուրս գալ եւ կուսակցութիւն կոչուած նորոյթին հետեւիլ: Ասոնք որքան երջանիկ էին իրենց կակուղ մինտէրներուն գիրկը, իրենց կըլկըլակներուն ծուխին տակ…

Այս մարդիկը «յեղափոխութիւն» անունով երդմըն ալ բերին իրենց հետ եւ աստ «Թուրքը դըրդըռեցին ու մէկ միլիոն Հայեր՝ արիւնառութեան ենթարկուեցան»:

Իսկ մնացորդն ալ « իր ազատ կամքովը » հեռացաւ, ցրուեցաւ ի սփիւռս աշխարհի…

Եթէ գոյութիւն չունենար Դաշնակցութիւնը, այսօր, մենք մեր հայրենիքին, մեր տուներուն մէջ, խաղաղ եւ երջանիկ՝ մեր կորկոտն ու հերիսան պիտի վայելէինք, ինչպէս Քիւրտերն ու Արաբները, Ցոյներն ու միւս ոչ – Թուրք ազգերը, որոնք այսօր, դեմոկրատ Թուրքիոյ հայրախնամ հովանիին տակ, երջա՛նկօրէն կ'ապրին…

Հապա՛ սա Միացեալ Անկախ Հայաստանի Հանրապետութի՞ւնը: Առանց Քեռիի հրամանին և առանց միւս հայ կուսակցութիւններու « փորձառու» ցուցմունքին՝ դրօշակ պարզել Երեւանում… Օ՛, առնուազն ամբարտաւանութիւն էր դա: « Մենք ո՛վ ենք որ …»:

Այսօր, գաղութներու մէջ, Հ. Յ. Դ.ն կրկին գործի վրայ է: Հանգիստ չի տար միւս կուսակցութիւններուն եւ կազմակերպութիւններուն: Չի թողուր որ մարդիկը իրենց գիշերանոցներուն մէջ քաշուած՝ իրենց սուրճը փրթեն: Ազգագործութիւն ընեն՝ իրենց գործաժամերէն աւելցածով եւ իրենց հասկցած ազատ ձեւովը: Հ. Յ. Դ.ն իրար կ'անցընէ բոլորը, «ազգը, ազգը» պոռալով:

Տպարան, թերթ, գիրք հրատարակել, խմբագիր – գրող – ճզող ճարելու կը ստիպէ զանոնք:

Բարեբախտաբար, Դաշնակցութիւնը բոլորովին անգութ չէ միւս կազմակերպութիւններու հանդէպ: Կ'աշխատի, չափով մը օգտակար ըլլալ անոնց:

Իր շարքերուն մէջէն կը ջոկէ ծուռբերանները եւ կը ղրկէ դիմացիններուն՝ իբրեւ գրող – լրող կամ խմբագրող, որոնք, իրենց անձնական հաշիւներն ու դառնութիւնները «ասում են»ական յօդուածներու վերածելով՝ կը լեցնեն դէմի լրագիրները որով թէ իրենք կը թեթեւնան եւ թէ իրենց թերթերն ալ սովէ կ'ազատին…

Գործի՞ մղել կ'ուզես հակաները, «այսինչ թաղին մէջ Դաշնակները դպրոց պիտի բանան եղեր» մը տարածէ, բոլորը նոյն թաղին մանուկները ձեռք առնելու, հայացնելու կը ձեռնարկեն:

Եթէ փափաք ունիս ազգային աթոռ մը քաշել տակդ, ինքզինքդ Դաշնակներու կողմէ հալածուած ցոյց տուր եւ ահա հականերու քուէները վրադ կը թափին…

« Դաշնակցութիւնը եկեղեցին պիտի խանգարէ եղեր» մը նետէ հրապարակ, «կրօնքը մօրֆին է» պոռացողները, իրենց խնամիներով մոլեռանդ եկեղեցասէր – կրօնասէր կը դառնան: Տէրտէրութեան թեկնածու կը ներկայանան: Նարեկացի, Շնորհալի տօնելու կը ձեռնարկեն: Կաթողիկոսի, եպիսկոպոսի ձեռք կը համբուրեն եւ խաչակնքելու վարժութիւն ձեռք բերելու կ'աշխատին…

Հ. Յ. Դաշնակցութեան գործած այսքան չարիքներու փոխարէն զինքը ամչցնելու եւ պատժելու համար, անոր տօնին առթիւ կը մաղթեմ որ Կարսը, Արտահանը եւ միւս հողերը կցուին Հայաստանին: Ռեսպուբլիկան ալ Հանրապետութեան վերածուելով՝ բոլորը մէկ բեռցուի անոր եւ հայ ժողովուրդի ուսին՝ քանի որ հայ ժողովուրդն ալ յանցաւոր է քաջալերելուն համար Հ. Յ. Դ.ն…

Կ. ՊԵՏՈՒՇ

---

ՀԱՅԸ ՊԻՏԻ ԱՊՐԻ

Հայը պիտի ապրի՛, հակառակ դահիճներուն եւ հակառակ իր աչքին տակը բուսած կորեկին: Հայը պիտի ապրի ժողովուրդներու սիրագօտ շըղթային մէկ ոսկի օղակն ըլլալու համար: Ա՛յս է մեր բոլորիս յոյսը. յոյս մը, զոր մուրճով կռեցինք, ինչպէս մեր պապերէն մէկուն նիզակը, որ նպատակին կը դիմէր, օդին եւ արեւուն մէջ երգելով:

ԴԱՆԻԷԼ ՎԱՐՈՒԺԱՆ

★

ՊԻՏԻ ԳԱՅ ՕՐ ՄԸ…

Պիտի գայ օր մը, երբ ազնուարներու գերեզմանները պիտի բացուին, Արտաւազդ դուրս պիտի ելլէ Մասիսի անդնդախոր վիհերէն, Լուսաւորչի կանթեղը՝ Արագածի եւ Սեպուհի բարձունքներուն վրայ նորէն պիտի սկսի պլպլալ բոլոր մահկանացուներու աչքին եւ վերջապէս Մհերը, Սասունցի Դաւիթի դիւցազն զաւակը, Ակոռի քարին ժայռէ դուռը հրելով, լոյս աշխարհ պիտի գայ Արծրունիներու թագաւորութիւնը վերականգնելու: Այն օրը պիտի վերնայ անէծքը Անիի վրայէն, հազարումէկ եկեղեցիներու զանգակները պիտի ղօղանջեն եւ մեռած մայրաքաղաքին փառքը նորէն պիտի սկսի ճաճանչել Արարատեան դաշտին վրայ:

Ա. ՎՌԱՄԵԱՆ

---

Է. ԱԿՆՈՒՆԻԻ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆԸ

Է. Ակնունիի նամակը՝ ուղղուած Հ. Յ. Դաշնակցութեան Ամերիկայի Շրջանի Պատգմ. ժողովին **1911**, Դեկտ. **10**ին.

— « Ողջոյնի հետ միասին՝ համեստ մի խնդրանք ունեմ — ձեր վէճերի ժամին եւ պայքարի ժամանակ, ոգեւորութեան թէ լքումի ընթացքում, մի վայրկեան իսկ աչքից մի թողէք լուսաստղը – մեր վիրաւոր Վաթանը, որ տարագիր որդոց սիրով է ժպտում, նրանց սրտի մէջ է որոնում իր կայանը, եւ նրանց դարձի մէջ՝ իր մխիթարանքը:

Նայեցէք միշտ դէպի Երկիր եւ հաւատացէք նրա ապագային: Ճիշդ է, քաղաքական կարմիր ամպերը նորից կուտակւում են, բայց ազատութեան վերելքը, թէեւ ծանր, յամրաքայլ անդիմադրելի է:

Եւ ես հաւատ ունեմ, ապառաժ հաւատ, որ շատ տարիներ չանցած՝ շատերը ներկայ սերնդից, նոյնիսկ ձեր փոքրիկ ժողովից նրանք, որոնք դեռ սպիտակ մազ չունին եւ բախտ ունին, այժմ թոթովախօս եւ անվստահ, կը մեծանան, կը բարձրանան քաղաքական պայքարի սանդուղները եւ կ'երթան բազմելու Հայ ժողովուրդի Ներկայացուցչական ժողովի՝ Հայկական Պարլամենտի մէջ — մօտաւոր իջեւանը քաղաքական մեր յաղթանակի:

Ու եթէ մի օր ձեզանից մէկը, իմ ընկերներ, արժանանայ այդ չքնաղ բախտին, թող յիշի, որ իմ ասածը մարգարէութիւն չէ, այլ միայն հաւատ, անխախտ հաւատ դէպի այն ճամբան, որ թէեւ արեամբ ներկուած՝ միշտ առաջնորդում է դէպի աշխատանքի եւ գաղափարի յաղթադաշտը»:

---

ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ
«ՅԱՌԱՋ»Ը

